Պրոլետարներ բոլոր յերկրների, միացե՛ք

Հ Կ (բ) Կ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ՅԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 10 (88)

Հայկական ԽՍՀ ԺԿԽ-ին կից «ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
Հրատարակչություն, ՅԵՐԵՎԱՆ—1940 թ.

Պրոլետարներ բոլոր յերկրների, միացե՛ք

Հ Կ (Բ) Կ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ՅԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 10 (88)

Հայկական ԽՍՀ ԺԿԽ-ին կից «ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
Հրատարակչություն, ՅԵՐԵՎԱՆ—1940 թ.

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

ԷՋ

ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՄԹԵՐՔՆԵՐԻ ՄԹԵՐՈՒՄՆԵՐԻ ՅԵՎ ԳՆՈՒՄՆԵՐԻ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՄԵՋ ԿԱՏԱՐՎԱԾ ՓՈՓՈԽՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ . 3—26

ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԱՌԱՐԱՆ . . . 27—37

ԽՄՀՄ ՊԵՏՊԼԱՆԻ ԺՈՂՈՎՐԴԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՀԱՇՎԱՌՄԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ՎԱՐՉՈՒԹՅԱՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ 1939 ԹՎԻ ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ՄԱՐԴԱՀԱՄԱՐԻ ՏՎՅԱԼՆԵՐԻ ՄԱՍԻՆ . . . . . . .

# ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՄԹԵՐՔՆԵՐԻ ՄԹԵՐՈՒՄՆԵՐԻ ՅԵՎ ԳՆՈՒՄՆԵՐԻ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՄԵՋ ԿԱՏԱՐՎԱԾ ՓՈՓՈԽՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Կուսակցությունն ընկեր Ստալինի ղեկավարությամբ ամեն օր կազմակերպում է կոլխոզային կարգի հաղթանակը, նա անդուլ հետևում է գյուղում առաջացող բոլոր փոփոխություններին: Նա իր ժամանակին նոր խնդիրներ է առաջադրում կոլխոզային շարժմանը, կոլխոզային մասսաներին մոբիլիզացիայի յե յենթարկում այդ խնդիրների կատարման և կոլխոզային կարգի նորանոր հաղթանակների համար:

Մասսայական կոլխոզշարժման արշալույսին վիթխարի նշանակություն ունեցավ ընկեր Ստալինի «Գլխապտույտ հաջողություններից» հոդվածը կոլխոզային կարգի հաղթանակի գործում:

Ընկեր Ստալինի ճառերը՝ մարքսիստ-ագրարագետների կոնֆերենցիայում, Համ. Կ(բ)Կ ԿԿ-ի և ԿՎՀ-ի 1933 թվի հունվարյան միացյալ պլենումում, հարվածային կոլխոզնիկների Համամիութենական առաջին համագումարում և գյուղատնտեսական արտելի ստալինյան կանոնադրությունը տվին կոլխոզներին՝ որպես սոցիալիստական տնտեսության ձևերից մեկի՝ թեորիական հիմնավորումը և հանդիսացան կոլխոզային կարգերի զարգացման ու ամրապնդման ուղիների ստալինյան կանխատեսման ծրագիրը:

Կուսակցության և կառավարության բոլոր որոշումները, մասնավորապես 1939 թվի մայիսի 27-ի որոշումը «Կոլխոզների հանրային հողերը շռայլումից պահպանելու միջոցառումների մասին», 1939 թվի հուլիսի 8-ի որոշումը «Կոլխոզներում հանրայնացված անասնապահությունը զարգացնելու միջոցառումների մասին» և ՀամԿ(բ)Կ ԿԿ-ի մարտյան պլենումի որ-



րոշումը գյուղատնտեսական մթերքների մթերումների և գնումների քաղաքականության մեջ կատարվող փոփոխությունների մասին հանդիսանում են ստալինյան ամենավառ հոգատարությունը կոլխոզային կարգերի ամրապնդման և կոլխոզնիկների ունևոր կյանքի բարձրացման գործում:

Մթերումների մինչև այժմ յեղած կարգի հիման վրա կոլխոզները պարտավոր կերպով պետությանը գյուղատնտեսական մթերքներ եյին հանձնում՝ յելնելով անասունների առկա գլխաքանակից, և հացահատիկային կուլտուրաների ցանքսի պլանից: ԽՍՀՄ Ժողկոմխորհի և ՀամԿ(բ)Կ ԿԿ-ի նոր որոշման հիման վրա մսի, կաթի, բրդի, հացահատիկի, բրնձի, կարտոֆելի, բանջարեղենի, կաշվի, ձիթատու կուլտուրաների (արևածաղկի, դանդրամազ վուշի, ոզկանեփի, սոյայի և այլն) սերմերի և խոտաբույսերի (առվույտի, վիկի, տիմոֆեյեվկայի և այլն) պարտադիր հանձնումները հաշվվելու յեն կոլխոզին ամրացված վարելահողի յուրաքանչյուր հեկտարից:

Կուսակցության և կառավարության վերոհիշյալ որոշումը արմատապես փոխում է գյուղատնտեսական մթերքների մթերում-

ների և գնումների բնագավառում մինչև այժմ գոյություն ունեցող կարգը:

ՀամԿ(բ)Կ ԿԿ-ի և ԽՍՀՄ Ժողկոմխորհի վորոշումը ունի քաղաքական ու տնտեսական վիթխարի նշանակություն և նոր ազդակ կհանդիսանա սոցիալիստական գյուղատնտեսության հետագա բարձրացման գործում:

Ճիշտ կերպով են զուգակցվում պետության շահերը գյուղատնտեսական մթերքների մթերումների գծով և կոլխոզների շահագրգռվածությունը հանրայնացված տնտեսության զարգացման գծով. ըստ ամենայնի եֆեկտիվ և ռացիոնալ կերպով է օգտագործվում կոլխոզներին ամրացված հողը: Այդ հողը կոլխոզային կարգի ուժի և ամրության հիմնական աղբյուրն է:

Լավ մշակված հողի յուրաքանչյուր հեկտարից ավելի շատ յեկամուտ կստանանք, վատ մշակված հողից՝ ավելի քիչ յեկամուտ կստանանք: Կոլխոզները սիստեմատիկ կերպով պետք է ձգտեն ավելի շատ յեկամուտ ստանալ՝ հողը լավ մշակելու, հողի բարեբերությունը անընդհատ բարձրացնելու, կուլտուրաների բերքատվությունը բարձրացնելու և հանրային



անասնապահությունը զարգացնելու ճանապարհով: Այդպիսի կոլխոզներ մեզանում շատ շատ են: Այսպես, օրինակ, Ղամարլույի շրջանի Թոխանշալու գյուղի միլիոնատեր կոլխոզն ունի ընդամենը 371 հեկտար հողային տարածություն, 1939 թվին այդ կոլխոզը ստացավ 1 միլիոն 34 հազար 400 ռուբլի դրամական յեկամուտ, այսինքն յուրաքանչյուր հեկտար հողը այս կոլխոզում յեկամուտ է տվել 2788 ռ.: Իսկ Զանգիբասարի շրջանի Մեյմանդար գյուղի կոլխոզը 671 հեկտար հող ունենալով՝ 1939 թվին ստացավ ընդամենը 395·540 ռուբլի կամ յուրաքանչյուր հեկտարից 588 ռ.: Միատեսակ պայմաններում հողային տարածության յուրաքանչյուր հեկտարը Թոխանշալույի կոլխոզում տալիս է 2788 ռուբլի, իսկ Մեյմանդարի կոլխոզում՝ 588 ռ. կամ Թոխանշալույի կոլխոզից համարյա հինգ անգամ պակաս: Կամ վերցնենք, օրինակի համար, Ալավերդու շրջանի Ծաթեր գյուղի կոլխոզը և Աշտարակի շրջանի Գոշ գյուղի կոլխոզը: Ծաթեր գյուղի կոլխոզն ունի 1249 հեկտար հող, իսկ Գոշինը՝ 2960 հեկտար կամ 2,5 անգամ ավելի: 1939 թվին Ծաթերի կոլխոզն ստացավ 114·100 ռուբլու

յեկամուտ, իսկ Գոշինը՝ 52·400, Ծաթերի կոլխոզի յուրաքանչյուր հեկտարից ստացվում է 9 ռ. 10 կ. յեկամուտ, իսկ Գոշի կոլխոզի յուրաքանչյուր հեկտարից՝ 1 ռ. 90 կ.: Ծաթեր գյուղի կոլխոզը 1939 թվին հողային տարածության յուրաքանչյուր հեկտարից ստացավ 200 կիլո հացահատիկ, 320 կիլո կարտոֆել, 75 կիլո կաթ, 2 կիլո բուրդ: Հողային տարածության յուրաքանչյուր 100 հեկտարին ընկնում է 39 գլուխ խոշոր յեղջերավոր անասուն, 110 գլուխ մանր յեղջերավոր անասուն, 8 գլուխ ձի: Իսկ Գոշ գյուղի կոլխոզը 1939 թվին հողային տարածության յուրաքանչյուր հեկտարից ստացավ 40 կիլո հացահատիկ, 1,4 կիլո կաթ և ուրիշ վոչինչ: Հողային տարածության յուրաքանչյուր 100 հեկտարին ընկնում է 7 գլուխ խոշոր յեղջերավոր անասուն, 0,4 գլուխ մանր յեղջերավոր անասուն և 0,4 գլուխ ձի:

Ինչպես տեսնում ենք Թոխանշալու և Մեյմանդար, Ծաթեր և Գոշ գյուղերի կոլխոզների միջև տարբերությունը շատ մեծ է: Այստեղ, իհարկե, հողը չի մեղավոր:

Հողը հող է: Բայց լավ մշակողի ձեռքին



ավելի շատ է յեկամուտ տալիս, վատ մշակողի ձեռքին՝ ավելի քիչ:

Գյուղատնտեսական մթերքների մթերումների և գնումների նոր քաղաքականությունը կպարտավորեցնի հետ մնացած կոլխոզներին իրենց ձեռք տալ—լավ մշակել հողը, բարձրացնել նրա բերրիությունը, կուլտուրաների բերքատվությունը— և զարգացնել հանրայնացված անասնապահությունը, վորովհետև նրանք պարտավոր են հողային տարածության յուրաքանչյուր հեկտարից պետությանը գյուղատնտեսական մթերքներ և հումք հանձնել:

Գյուղատնտեսական մթերքների մթերումների և գնումների նոր կարգն ամբողջապես համապատասխանում է առաջավոր կոլխոզների պահանջներին:

«Հանրային անասնապահությունը զարգացնելու միջոցառումների մասին» Համ. Կ(բ)Կ ԿԿ-ի և ԽՍՀՄ Ժողկոմխորհի հուլիսի 8-ին ընդունած վորոշմամբ վերացվեցին խոչընդոտները հանրային անասնապահության զարգացման գործում:

Վերացվեց մսի հանձնման գոյություն ունեցող այն կարգը, ըստ վորի մսի պարտադիր հանձնումը հաշվվում եր անա-

ունների գլխաքանակով: Այժմ մսի պարտադիր հանձնումը հաշվվում է կոլխոզին ամրացված հողային տարածության յուրաքանչյուր հեկտարից:

Մսի հանձնման հին կարգը զարկ չէր տալիս հանրային անասնապահության զարգացմանը: Կոլխոզները, տարեց-տարի ավելացնելով հանրային հոտը, համապատասխան կերպ մեծ առաջադրություն էին ստանում մսի հանձնման գծով, իսկ այն կոլխոզները, վորոնք կրճատում էին անասունների գլխաքանակը ֆերմաներում, արտոնյալ դրության մեջ էին ընկնում և ավելի փոքր առաջադրություն էին ստանում:

Այդ կարգի խոշորագույն թերությունն այն էր, վոր բացակայում էր պետության շահերի ճիշտ զուգակցումը (գյուղատընտեսական մթերքների մթերումների իմաստով) կոլխոզների շահագրգռվածության հետ՝ հանրային անտեսությունը զարգացնելու գործում: Այսպես, որինակ, Կիրովականի շրջանի Ծահալի գյուղի կոլխոզը, ունենալով 1786 հեկտար հողային տարածություն և 877 գլուխ անասուն (խոշոր յեղջերավոր անասուններով հաշված), 1939 թվին պետությանը հանձնեց



125 ցենտներ միս: Նույն շրջանի Վոսկրեսենովկա գյուղի կոլխոզը, վորն ուներ 1800 հեկտար հողային տարածություն և 286 գլուխ անասուն, 1939 թվին պետությանը հանձնեց 24 ցենտներ միս: 1940 թվին Ծահալի գյուղի կոլխոզը հաշվման նոր նորմաներով պետությանը կհանձնի 76,8 ցենտներ միս, այսինքն՝ 48,6 ցենտներով պակաս, քան 1939 թվին, իսկ Վոսկրեսենովկա գյուղի կոլխոզը կհանձնի 77,4 ցենտներ, այսինքն՝ 53,3 ցենտներ ավելի: Նոյեմբերյան շրջանի Դովեխ գյուղի կոլխոզը, ունենալով 820 հեկտար հողային տարածություն և 420 գլուխ անասուն (խոշոր յեղջերավոր անասուններով հաշված), 1939 թվին պետությանը հանձնեց 74,6 ցենտներ միս, իսկ 1940 թվին կհանձնի 33,6 ցենտներ. 41 ցենտներով պակաս: Նույն շրջանի Ջուջեվան գյուղի կոլխոզը, վոր ուներ 850 հեկտար հողային տարածություն և 316 գլուխ անասուն, դարձյալ խոշոր անասուններով հաշված, 1939 թվին պետությանը հանձնեց 135 ցենտներ, իսկ 1940 թվին պետք է հանձնի 34 ցենտներ, 101 ցենտներով պակաս:

Այսպիսով, այս յերկու կոլխոզները, ունենալով համարյա հավասար հողային

տարածություն, այս տարի կհանձնեն մեկը 41, մյուսը 101 ցենտներով պակաս միս:

Հետաքրքիր օրինակներ կարելի յե բերել նաև ըստ առանձին շրջանների: Իբրև օրինակ վերցնենք Նոր Բայազետի և Գորիսի շրջանները: Յերկու շրջաններն ունեն հավասար հողային տարածություն, Գորիսը՝ 51.716 հեկտ., Նոր-Բայազետը՝ 51.310 հեկտ.: 1939 թվին, յելնելով անասունների գլխաքանակից, Գորիսը հանձնեց 2251 ցենտներ, Նոր-Բայազետը՝ 1577 ցենտներ: 1940 թվին Գորիսը պետք է հանձնի 2120 ցենտներ, այսինքն՝ 430 ցենտներ պակաս, իսկ Նոր-Բայազետը՝ 2206 ցենտներ, այսինքն՝ 629 ցենտներ ավելի:

ՀամԿ(բ)Կ ԿԿ-ի և ԽՍՀՄ Ժողկոմխորհի 1939 թվի հուլիսի 8-ի վորոշմամբ ընդմիշտ վերջ տրվեց այդ անարդարությանը: Մսի հանձնման գոյություն ունեցող կարգը փոխարինվեց նոր կարգով: Մսի հանձնման չափն այժմ հաշվվում է վոչ թե կոլխոզի անասունների առկա գլխաքանակով, այլ հողային տարածության մեծությամբ:

Այս սիստեմը շահավետ դրություն է



ստեղծում առաջավոր կոլխոզների համար, վորոնք լավ ֆերմաներ ունեն ու տարեցտարի ավելացնում են անասունների գլխաքանակը և ձիգ է տալիս մնացած կոլխոզներին, վորոնք չեն հոգում անասունների գլխաքանակն ավելացնելու մասին:

Նույնպիսի վոչ-ճիշտ փոխհարաբերություն կար բրդի, կաթի և այլ մթերքների հանձնման գործում:

Բրդի հանձնման վերաբերյալ նոր վորոշման հիման վրա 1940 թվին բրդի պարտադիր հանձնումը հաշվվում է կոլխոզների հեկտարային տարածությունից: Բերենք օրինակներ. Նոր-Բայազետի և Սպիտակի շրջաններն ունեն հավասար հողային տարածություն, բայց Նոր-Բայազետի շրջանը, յելնելով կոլխոզներում յեղած անասունների գլխաքանակից, 1939 թվին պետությանը հանձնեց 20039 կլգ. բուրդ, իսկ Սպիտակի շրջանը՝ 12970 կլգ.: Նոր վորոշման հիման վրա Նոր-Բայազետի շրջանը պետք է հանձնի 15906 կլգ. բուրդ, կամ 4433 կլգ. ավելի պակաս, իսկ Սպիտակի շրջանը պետք է հանձնի 15880 կլգ. բուրդ, կամ 2919 կլգ. ավելի:

Առանձին կոլխոզների վերաբերյալ օրի-

նակները տալիս են ե՛լ ավելի ակնառու պատկեր: Սիսիանի շրջանի Շաքի գյուղի կոլխոզը, ունենալով 4832 հեկտ. հողային տարածություն և 2689 գլուխ վոչխար, 1939 թվին պետությանը հանձնեց 3924 կլգ. բուրդ իսկ 1940 թվին, հողային տարածությունից յելնելով, կհանձնի 1498 կլգ., կամ 2426 կլգ. պակաս: Նույն շրջանի Շաղաթ գյուղի կոլխոզը, ունենալով համարյա հավասար տարածություն՝ 4782 հեկտ., բայց 257 գլուխ վոչխար, 1939 թվին պետությանը հանձնեց 240 կլգ. բուրդ, իսկ 1940 թվին պետք է արդեն հանձնի 1482 կլգ., այսինքն՝ այնքան, վորքան Շաքի գյուղի կոլխոզը, 1242 կլգ. ավելի, քան 1939 թվի հանձնածը:

Այս վորոշման իրագործումն արդեն ռեալ եֆեկտ է տվել հանրային անասնապահության զարգացման և նոր ֆերմաների կազմակերպման գործում: ՀամԿ(բ)Կ ԿԿ-ի և ԽՍՀՄ Ժողկոմխորհի վորոշումից հետո Հայաստանի կոլխոզներում կազմակերպվեցին 516 նոր ֆերմաներ, այդ թվում 47 կաթնա-ապրանքային ֆերմա, 124 վոչխարաբուծական – ապրանքային ֆերմա և 345 խոզաբուծական-ապրանքային ֆերմա: Նոր ֆերմաներ կազմակեր-



պելու և հները կոմպլեկտավորելու համար ձեռք բերվեց 17152 գլուխ խոշոր յեղջերավոր անասուն, այդ թվում 8064 գլուխ կով ու յերինջ, 25·502 գլուխ վոչխար. և 2262 գլուխ խոզ: Մինչև 1939 թվի հուլիսի 1-ը հանրապետության մեջ 9 կոլխոզ բոլորովին չունեյին վոչ մի տեսակի մթերատու անասուն, 49 կոլխոզ չունեյին վոչ մի հատ պրոդուկտիվ խոշոր յեղջերավոր անասուն, 138 կոլխոզ չունեյին վոչխարաբուծական ֆերմաներ և 827 կոլխոզ կամ բոլոր կոլխոզների 77 տոկոսը չունեյին խոզաբուծական ֆերմաներ: Մեկական ֆերմա ունեյին 166 կոլխոզ, յերկուական ֆերմա՝ 659 և 3-ական ֆերմա՝ միայն 242 կոլխոզ:

Իրագործելով ՀամԿ(բ)Կ ԿԿ-ի և ԽՍՀՄ Ժողկոմխորհի վորոշումը, մենք ունենք հետևյալ արդյունքները. 1039 կոլխոզ հանրապետության մեջ ունեն 3143 ֆերմա, այդ թվում 1039 կաթնա-ապրանքային ֆերմա, 1028 վոչխարաբուծական-ապրանքային ֆերմա, 534 խոզաբուծական-ապրանքային ֆերմա: Մեկական ֆերմա ունեն միայն 19 կոլխոզներ, յերկուական ֆերմա՝ 487 կոլխոզներ, կամ բոլոր կոլխոզների 47 տոկոսը և յերեքական ֆեր-

մա՝ 533 կոլխոզներ, կամ բոլոր կոլխոզների 51 տոկոսը:

Այսպիսով, մսի և բրդի պարտադիր հանձնման նոր վորոշումով լիկվիդացիայի յե յենթարկված այն դրությունը, յերբ առաջավոր կոլխոզներն անշահավետ դրության մեջ եյին ընկնում, իսկ մնացած կոլխոզները, վորոնք անասնապահական ֆերմաներ չունեյին, շահավոր պայմանների մեջ եյին գտնվում:

Մսի և բրդի պարտադիր հանձնման նոր կարգը, ինչպես յերևում է վերևում բերված որինակներից, իրեն արդարացրեց:

Կաթի հանձնման գոյություն ունեցող կարգը զարկ չեր տալիս հանրային անասնապահության զարգացմանը և անասունների կաթնատվության բարձրացմանը: Ըստ հին որենքների, այն ֆերմաները, վորոնք անասունների զարգացման գլխաքանակի մեծ աճ ունեյին և ամեն տարի ձգտում եյին բարձրացնել անասունների կաթնատվությունը, պետությանն ավելի շատ կաթ եյին հանձնում, իսկ այն կոլխոզները, վորոնք չեյին ձգտում ավելացնել անասունների գլխաքանակն ու կաթնատվությունը, պետությանն ավելի քիչ կաթ եյին հանձնում: Այսպես, որինակ, Կալինի-



նոյի շրջանի կոլխոզներն ամեն տարի ձգտում են բարձրացնել կովերի կաթնատվությունը և նրանք յուրաքանչյուր ֆուրաժային կովից ստանում են 15—16 ցենտներ կաթ, իսկ Ղարաբաղլարի շրջանը, վորտեղ կաթնատվության ցածր մակարդակի վրա յե, յուրաքանչյուր ֆուրաժային կովից ստանում է 6—7 ցենտներ կաթ: Կալինինոյի շրջանը, ունենալով 47694 հեկտ. հողային տարածություն, յելնելով անասունների առկա գլխաքանակից և յուրաքանչյուր կովի նորմայից (300 կգ.), 1939 թվին պետությանը հանձնեց 8673 ցենտներ, իսկ Ղարաբաղլարի շրջանը, ունենալով 43000 հեկտար հողային տարածություն, յուրաքանչյուր կովից հանձնելով 159 կգ., պետությանը տվեց 421 ցենտ. կաթ:

Կրասնոսելսկի շրջանը, ունենալով 42·057 հեկտար հողային տարածություն, յելնելով անասունների առկա գլխաքանակից և 240 կգ. կաթի նորմայից, պետությանը հանձնեց 4178 ցենտներ կաթ, իսկ Բասարգեչարի շրջանը, ունենալով 92·035 հեկտար կամ ավելի քան 2 անգամ Կրասնոսելսկի շրջանից ավելի հողային տարածություն, յելնելով անասունների առկա

գլխաքանակից և 200 կգ. նորմայից, հանձնեց 4010 ցենտներ, համարյա այնքան, վորքան Կրասնոսելսկի շրջանը: Սիսիանի շրջանի Մոլոտովի անվան կոլխոզը, ունենալով 2532 հեկտար հողային տարածություն, յելնելով 2040 կգ. նորմայից, 1939 թվին պետությանը հանձնեց 76.8 ցենտներ, իսկ նույն շրջանի Դիմիտրովի անվան կոլխոզը, ունենալով 2567 հեկտար, համարյա այնքան, վորքան Մոլոտովի անվան կոլխոզը, յելնելով առկա գլխաքանակից և հանձնման նորմաներից, հանձնեց 720 ցենտներ:

Կաթի հանձնման բնագավառում նույնպես լիկվիդացիայի յե յենթարկված վոչճիշտ փոխհարաբերությունը, վոր կար առաջ:

Սահմանված է նաև ձվի հանձնման նոր կարգ: Սկսած 1941 թվից, կոլխոզները պետք է պետությանը ձու հանձնեն, յելնելով հողային տարածությունից: Դա մեծ խթան կհանդիսանա թռչնաբուծությունը զարգացնելու և թռչնաբուծական ֆերմաներ կազմակերպելու գործում:

Մեր հանրապետության մեջ, չնայած բոլոր հնարավորություններին, թռչնաբուծության զարգացմանը մինչև այժմ ու-



շադրություն չեր դարձվել: Հողժողկոմատը և շրջանների հողային օրգանները վոչ մի ուշադրություն չեն դարձնում թռչնաբուծության վրա, վորն անասնապահության յեկամտաբեր ճյուղերից մեկն է և հանդիսանում և լուրջ նշանակություն ունի հասարակական սննդի գործում: Մեր հանրապետության բոլոր կոլխոզները 1940 թվին պետք է կազմակերպեն թռչնաբուծական ֆերմաներ, ստեղծեն ինկուբատորային տնտեսություններ: Մարտյան պլենումի վորոշումից հետո մեր կոլխոզներն ամենուրեք ձեռնամուխ յեղան թռչնաբուծական ֆերմաների կազմակերպմանը:

Ղամարլույի շրջանի կլխ-կոլխոզնիկների նախաձեռնությունը թռչնաբուծական ֆերմայի կազմակերպման չեֆությունը վերցնելու ուղղությամբ ընդօրինակեցին մյուս շրջանների կլխ-կոլխոզնիկները: Ղամարլույի շրջանում կազմակերպված են 32 թռչնաբուծական ֆերմաներ, Միկոյանի շրջանում՝ 31, Յերևանի գյուղական ռայոնում 11 և այլն:

Սահմանված է նաև ձիերի գլխաքանակի պարտադիր հանձնումը պետությանը: Դա

զարկ կտա ձիաբուծության զարգացմանը: Հայտնի է, որ ձիաբուծությամբ զբաղվում էյին առանձին կոլխոզները, վորոնք սիստեմատիկ կերպով զարգացնում էյին ձիաբուծությունը, ընդհակառակը, այն կոլխոզները, վորոնք ձիաբուծությամբ չէյին զբաղվում, ազատվում էյին պետությանը պարտադիր կարգով ձի հանձնելուց: Այսպես, օրինակ, Հոկտեմբերյանի շրջանի Բամբակաշատ կոլխոզը, ունենալով 59 գլուխ ձի, ամեն տարի Կարմիր բանակին հանձնում էր 2—3 լավ ձի: Այդ կոլխոզի ձիաբուծական ֆերման գյուղատնտեսական ցուցահանդեսի թեկնածու է հանդիսանում 1940 թվին: Նոր-Բայազետի շրջանի Բաղիկյան գյուղի կոլխոզը զարգացնում է ձիաբուծությունը, ամեն տարի լավագույն ձիեր է հանձնում Կարմիր բանակին և ունի 130 ձի: 1940 թվին բանակին է հանձնել 3 լավ ձի: Այս կոլխոզը նույնպես գյուղատնտեսական ցուցահանդեսի թեկնածու է հանդիսանում: Հայաստանի մի շարք շրջաններ ձիերի հանձնման և բուծման պլանը կատարում և գերակատարում են, օրինակ՝ Արթիկը կատարել է 200 տոկոսով, Վաղարշապատը՝



433 տոկոսով, Ստեփանավանը՝ 150 տոկոսով, Կալինինոն 125 տոկոսով և այլն: Բայց շատ շրջաններ կան, օրինակ՝ Ալագյազը, Ղարաբաղլարը, Մարտունին, Կրասնոսելսկը, վորոնք ձիու գլխաքանակի աճեցմանը լուրջ ուշադրություն չեն դարձնում, և այդ շրջանների շատ կոլխոզներ պետության ձիեր հանձնելու պլանը չեն կատարում: Այսպես, օրինակ, Կրասնոսելսկի շրջանի Կրասնոսելսկ գյուղի կոլխոզը, Ախտայի շրջանի Ռնդամալ գյուղի կոլխոզը և Բասարգեչարի շրջանի Կարակոյուն գյուղի կոլխոզը, վորոնք ունեն 100-ից ավելի ձիեր, մատղաշ ձիերի վատ խնամքի և անփույթ վերաբերմունքի հետևանքով չեն աճեցնում ու բանակին չեն հանձնում բարձրորակ ձիեր:

Նոր վորոշման հիման վրա բոլոր կոլխոզները, կձգտեն լավագույն ձիեր աճեցնել, հողային տարածությունից ելնելով, և պետությանը լավագույն ձիեր հանձնել:

Անասնապահության հետագա զարգացման, կաշեհումքի բազայի ընդարձակման և կաշեղեն իրերի արտադրության ավելացման գործին նոր զարկ տալու նպատակով 1940 թվից սկսած մտցված է կոլխոզների,

կոլխոզնիկների և մենատնտեսների կողմից պետությանը պարտադիր կերպով կաշեհումք հանձնելու նոր կարգ: Կոլխոզների համար կաշեհումքի պարտադիր հանձնման հաշվումը կատարվում է հողային տարածության յուրաքանչյուր հեկտարից, իսկ կոլտնտեսականների տնտեսությունների և անհատական տնտեսությունների համար՝ ըստ տնտեսության:

Այդ տնտեսություններին թույլ է տրվում պարտավորությունները կատարելուց հետո կաշեհումքի մնացած քանակը վերամշակել իրենց· հայեցողությամբ տնտեսության կարիքների համար կամ վաճառել պետությանը:

Խոշոր կաշիներ ստանալու համար սահմանված է այնպիսի մի կարգ, որով յուրաքանչյուր կոլխոզ խոշոր եղջերավոր անասունների ֆերմաներում հողային տարածության հաշվով պետք է աճեցնի արջառներ առնվազն 2 տարեկան ժամանակ մորթելու համար:

ԽՍՀՄ Ժողկոմխորհի և ՀամԿ(բ)Կ ԿԿ-ի որոշումը հացահատիկային, լոբազգի և այլ կուլտուրաների վերամշակման, աղունավարձը վերացնելու մասին և ցորենի



աղալու համար փողով վճար հաստատելը հնարավորություն են տալիս կոլխոզներին վերականգնել տնտեսության այդ լքված ճյուղը և ամեն կերպ ընդարձակել այն:

Աղունավարձի վերաբերյալ օրենքը մտցվել էր այն ժամանակ, երբ ջրաղացների մեծ մասը գտնվում էր կուլակության ձեռքում: Այդ օրենքը պետության ձեռքում անհրաժեշտ մի միջոց էր վերահսկելու ցորեն աղալու գործին. այժմ, կոլխոզային կարգերի պայմաններում, այս օրենքը հնացել է և զգալի վնասներ է հասցնում կոլխոզային տնտեսությանը:

Ամբողջ աղունավարձը հանձնելով պետությանը, ստացած փողով կոլխոզը չէր կարողանում ոչ միայն վերականգնել, վերանորոգել ջրաղացը, այլև հանել ջրաղաց պահելու իր ծախքերը: Դրա հետևանքով ալրաղացությունն ընկել էր:

Հայաստանում միայն 1939 թվին շարքից դուրս եկան 288 ջրաղացներ: Իսկ ջրաղացները վիթխարի նշանակություն ունեն կոլխոզնիկների մեծ քանակությամբ հացահատիկը վերամշակելու և նրանց աղացքային պահանջմունքներն ապահովելու գործում:

Գյուղատնտեսական մթերքների մթե-

բումների և գնումների բնագավառում յեղած այս բոլոր հակասություններն ու թերությունները լիկվիդացիայի յեն յենթարկված: Լիկվիդացիայի յեն յենթարկված թերությունները նաև մթերող օրգանների կազմակերպական կառուցվածքում: Կրճատված է մթերողների թիվը, զուգահեռ մթերողները՝ «Զագոտզերնո»-ն, «Սոյուզզագոտկոժ»-ը և «Զագոտպուշնինա»-ն միավորված են մթերման ժողկոմատի սիստեմում:

Մթերման և գնման բնագավառում կուսակցության և կառավարության վարած քաղաքականության այս փոփոխություններն արդյունք են այն բանի, վոր գոյություն ունեցող կարգը, վորն իր ժամանակ դրական դեր է խաղացել, այժմ հնացել է և դանդաղեցնում է կոլխոզի հանրային անտեսության հետագա զարգացումը:

ՀամԿ(բ)Կ ԿԿ-ի և ԽՍՀՄ Ժողկոմխորհի վորոշման մեջ ասված է.

«Կոլխոզների կողմից պետությանը պարտադիր կարգով հանձնվելիք հացահատիկի, բրնձի, արևածաղկի և կարտոֆիլի հաշվման գոյություն ունեցող կարգը տառապում է այն արմատական թերությամբ, վոր մթերումների չափը հաշվ-



վում է նայած այդ կուլտուրաների ցանքի պլանին, մի հանգամանք, վորը կայուն բազա չի տալիս հարկի ուժ ունեցող պարտադիր մթերումները հաշվելու համար, հանգեցնում է կոլխոզների ձգտմանը՝ հանելու հացահատիկի, արևածաղիկի ու կարտոֆիլի ցանքերի նվազեցված պլանների, խրախուսում է այդ կուլտուրաների ցանքերի տարածությունների կրճատումը, չի խթանում նոր հողերի յուրացմանը՝ խոպանի հերկման, ճահիճների ցամաքեցման և թփուտներն արմատախիլ անելու միջոցով»:

Այս վորոշման հիման վրա կոլխոզների առանձին դեկավարների ձգտումները ցանքատարածությունները կրճատելու ուղղությամբ՝ լիկվիդացիայի յեն յենթարկված, հետ մնացող կոլխոզներն իրենց պինդ թափ կտան առաջավոր կոլխոզներին հասնելու համար: Մթերումների նոր կարգը պաշտպանում է բոլոր կոլխոզների և կոլխոզնիկների շահերը, ամբողջ յերկրի շահերը, նա խրախուսում է առաջավոր կոլխոզների նախաձեռնությունը և զարկ կտա հանրային անասնապահության հետագա զարգացմանը, գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացմանը և նրանց

ցանքատարածությունների ընդարձակմանը:

Մեր ագիտատորները բոլոր կոլխոզներում պետք է լայն կերպով բացատրեն մթերումների նոր քաղաքականությունը և նրա հսկայական նշանակությունը կոլխոզների հանրային տնտեսության հետագա զարգացման համար: Միևնույն ժամանակ ագիտատորի խնդիրը կայանում է նրանում, վորպեսզի կուսկազմակերպությունների հետ միասին կուսակցության այս նոր և կարևոր վորոշումը գործի վերածեն յուրաքանչյուր կոլխոզում:



## ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԱՌԱՐԱՆ

### ԹԵՐԹՈՒՄ ՀԱՆԴԻՊՈՂ ԱՌԱՆՁԻՆ ԲԱՌԵՐԻ ՅԵՎ ՀԱՍԿԱՑՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԲԱՑԱՏՐՈՒԹՅՈՒՆԸ

### ՍԱԱԴԱԲԱԴԻ ՊԱԿՏ

Կամ չորս յերկրների Մերձավոր-Արևելյան պակտ,— միմյանց վրա չհարձակվելու այն պայմանագիրն է, վոր կնքվեց 1937 թվի հուլիսի 8-ին Թեհրանում (Իրանի մայրաքաղաք) Սաադաբադի պալատում Թյուրքիայի, Իրանի, Իրաքի և Աֆղանստանի արտաքին գործերի մինիստրների կողմից: Պակտը պարունակում է հիմնականում հետևյալ պարտավորությունները— միմյանց վրա չհարձակվել. հարգել պակտին մասնակցող պետությունների միջև գոյություն ունեցող սահմանների անձեռնմխելիությունը, ձեռնպահ մնալ թշնամական

և զավթողական գործողություններից միմյանց նկատմամբ, խաղաղ ճանապարհով լուծել կոնֆլիկտները, չխառնվել միմյանց ներքին գործերին, փոխադարձաբար խորհրդակցել այդ յերկրների կառավարություններին հետաքրքրող հարցերի շուրջը։ Սաադաբադի պակտն ստորագրած պետությունները կազմեցին Մերձավոր-Արևելյան (կամ Արևելյան) Անտանտան, որի խորհրդի մեջ մտնում են չորս յերկրների արտաքին գործերի մինիստրները։ Մերձավոր-Արևելյան Անտանտայում գլխավոր դերը խաղում է Թյուրքիան։

Մերձավոր-Արևելյան Անտանտան ծագում առավ բրիտանական իմպերիալիզմի ազդեցության տակ, որը տնտեսական և ստրատեգիական տեսակետից խիստ շահագրգռված է Մերձավոր Արևելքի յերկրներով։ Անգլիան միշտ հույս է ունեցել, թե նրան կհաջողվի օգտագործել Մերձավոր-Արևելյան Անտանտային ԽՍՀՄ-ի դեմ պայքարելու համար։

Ներկայումս Անգլիան և Ֆրանսիան պատերազմի նոր պլացդարմներ փնտրելով՝ դարձյալ սկսել են մեծ ուշադրություն դարձնել Մերձավոր Արևելքին։ Անգլո-



ֆրանսիական իմպերիալիստները ձգտում են այն բանին, որ Սաադաբադի պակտը դարձնեն իրենց նպատակներին յենթակա և առաջին հերթին՝ Գերմանիայի դեմ ուղղված ռազմական դաշինք։ Նրանք յերազում են նաև Մերձավոր-Արևելյան Անտանտային ԽՍՀՄ-ի դեմ լարելու մասին. այդ նպատակով անգլիական դիվանագիտությունն այդ յերկրներում ամեն տեսակի ցնդաբանություններ է տարածում այն մասին, որ, իբր թե Խորհրդային Միությունը դիտավորություն ունի հարձակվել իր Մերձավոր-Արևելյան հարևանների վրա։ Այստեղ իմպերիալիստների նպատակները պարզ են. նրանք ուզում են իրենց ներկայացնել որպես «փրկիչներ» և, ինչպես գրում է գերմանական «Դեյչե ալգեմայնե ցայտունգ» թերթը, «ամրացնել սեփական դիրքերը, որպեսզի իրենց տրամադրության տակ յելակետային բազա ունենան պատերազմն ընդարձակելու համար»։ Նրանք մտադիր են Մերձավոր Արևելքից առաջիկայում ևս ճնշում գործ դնել բալկանների վրա։

Անդրկուլիսային մեքենայություններին զուգընթաց, անգլո-ֆրանսիական բլոկն ուժեղ թափով ռազմական և ստրատեգիական

պատրաստություններ է տեսնում Մերձավոր Արևելքում: Սիրիայում ֆրանսիական գեներալ Վեյգանը գաղութային բանակ է կազմակերպել, Եգիպտոսում բրիտանական ուժերը կենտրոնացած են գեներալ Ուեյվելի հրամանատարության ներքո, այնտեղ զորքեր են լցրել Ավստրալիայից և Նոր Զելանդիայից, Իրաքում ուժեղացված է անգլիական կայազորը: Գեներալ Վեյգանը պատվավոր հյուր է Կահիրեյում և Անկարայում: Ռոտարերկլյա մամուլը գրում է, թե ծրագրված է միացյալ անգլո-ֆրանս-թյուրքական բանակ ստեղծել Մերձավոր Արևելքում: Անգլիացիներն ուժեղացնում են երկաթուղային և ավտոմոբիլային ճանապարհների կառուցումն Իրանում, Իրաքում և Մերձավոր Արևելքի մյուս երկրներում:

Մերձավոր-արևելյան բազայի ստրատեգիական նշանակության մասին բացահայտ կերպով հետեվյալն է գրում «Թայմս»-ի ռազմական թղթակիցը, հիշելով անցյալ պատերազմը. «Պատահական չէ, որ պատերազմական պատմությունն այնքան հաճախ կրկնվում է ընդհանուր գծերով. Նրա համար է կրկնվում, որ ստրատեգիան



հիմնված է աշխարհագրության վրա: Սուեզի ջրանցքն առաջվա պես «կենսական զարկերակ» է հանդիսանում... Եգիպտոսն առաջվա պես հոյակապ պլացդարմ է ներկայացնում մերձավոր-արևելյան ռեզերվների համար, և այժմ ավելի մեծ չափով, քան այն ժամանակ, որովհետև այդ ռեզերվները կապված են Սիրիայում գտնվող նույն բնույթի ֆրանսիական խոշոր ուժերի հետ և որովհետև Թյուրքիան վերադարձել է Մեծ Բրիտանիայի հետ բարեկամություն հաստատելու իր հին տրադիցիային»:

Այսպես, ուրեմն, պատերազմի հրձիգները բոլոր ուժերով աշխատում են պատերազմի նոր թև ստեղծել Մերձավոր Արևելքում և պատերազմի մեջ քաշել Սաադաբադի պակտի երկրները: Իրենց դիվանագիտական գործունեության մեջ նրանք, ինչպես Բալկաններում, այնպես էլ այստեղ, հենվում են Թյուրքիայի վրա, որն անգլո-ֆրանս-թյուրքական պակտի կնքումով վտանգավոր խաղի մեջ է մտել:

## ՏԱՐՏՈՒՅԻ ՀԱՇՏՈՒԹՅԱՆ ՊԱՅՄԱՆԱԳԻՐ

Իրագործելով ազգերի ինքնորոշման իրավունքի լոզունգը, Խորհրդային Ռուսաստանի կառավարությունը 1920 թվի փետրվարի 2-ին Տարտու քաղաքում (Եստոնիա) հաշտության պայմանագիր կնքեց Եստոնական Հանրապետության հետ։ Այդ պայմանագիրը ճեղք բաց արավ այն բլոկադայի օղակում, վոր կազմակերպել եյին անգլո-ֆրանսիական իմպերիալիստները յերիտասարդ Խորհրդային յերկրի շուրջը։

Ըստ Տարտույի պայմանագրի, Խորհրդային Ռուսաստանը ճանաչեց Եստոնիայի անկախությունն ու ինքնուրույնությունը, համաձայնվեց նրան 15 միլիոն ռուբլի (վոսկով) վճարել ռուսական վոսկու ֆոնդից, Եստոնիային ազատեց ցարական Ռուսաստանի տարբերկրյա պարտքերի պատասխանատվությունից։ Եստոնիան իր կողմից իր նավահանգիստները տրամադրեց խորհրդային ապրանքների տրանզիտի համար։

Տարտույի պայմանագիրը սկիզբ դրեց յերկու յերկրների բարեկամական հարաբերություններին և նրանց տնտեսական մեր-



ձեցմանը։ 1932 թվի մայիսի 4-ին Մոսկվայում ԽՍՀՄ-ի և Եստոնիայի միջև պակտ կնքվեց միմյանց վրա չհարձակվելու և կոնֆլիկտները խաղաղ ճանապարհով լուծելու վերաբերյալ։ Խորհրդային Միության և Եստոնիայի քսանամյա բարեկամական հարաբերությունների տրամաբանական ավարտումը հանդիսացավ փոխադարձ օգնության խորհրդային-եստոնական պակտի կնքումը 1939 թվի սեպտեմբերի 28-ին։ Այդ պակտն ե՛լ ավելի յե ամրացնում Խորհրդային Միության և Եստոնիայի ժողովուրդների բարեկամությունը, ապահովում է սահմանների անվտանգությունը և բարձրացնում է յերկու յերկրների պաշտպանունակությունը, ընդարձակում է տնտեսական հարաբերությունները նրանց միջև։

Նշելով Տարտույի հաշտության պայմանագրի քսանամյակը, վողջ եստոնական մամուլն ընդգծեց նրա բարերար ազդեցությունն Եստոնիայի և ԽՍՀՄ-ի հարաբերությունների վրա, նրա տարբերությունն այն պայմանագրերից, վոր կնքել է Եստոնիան Արևմտյան Յեվրոպայի մյուս պետությունների հետ։

# ԽՈՐՀՐԴԱՅԻՆ-ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՀԱՄԱՁԱՅՆՈՒԹՅՈՒՆ

Կնքված է 1940 թվի փետրվարի 11-ին Գերմանիայի տնտեսական պատվիրակության և ԽՍՀՄ արտաքին առևտրի ժողովրդական կոմիսարիատի բանակցությունների հետևանքով։ Համաձայնությունը նախատեսում է ԽՍՀՄ-ից Գերմանիա արտահանել հումք, այդ թվում նաև պարենային ապրանքներ, իսկ դրանց փոխարեն Գերմանիայից ԽՍՀՄ ներմուծել արդյունաբերական մեքենաներ, այդ թվում նաև սպառազինության առարկաներ։ Ըստ այս համաձայնության, ապրանքափոխանակությունը ԽՍՀՄ-ի և Գերմանիայի միջև առաջին իսկ տարում կհասնի այնպիսի ծավալի, որը կգերազանցի առաջին համաշխարհային պատերազմի ժամանակից հետո երբևիցե գոյություն ունեցած առավելագույն չափերը, ընդ որում երկու կողմերը մտադիր են ապագայում էլ ավելի մեծացնել փոխադարձ ապրանքամատակարարումը։

ԽՍՀՄ-ի և Գերմանիայի միջև կնքված տնտեսական համաձայնությունը լրացումն



ու զարգացումը հանդիսացան երկու երկրների միջև 1939 թվին կնքված պայմանագրերի, մասնավորապես օգոստոսի 19-ի առևտրա-վարկային համաձայնագրին, ըստ որի ԽՍՀՄ-ին 200 միլիոն գերմանական մարկի չափով վարկ տրամադրվեց գերմանական ապրանքների գնման համար և նախատեսվեց Խորհրդային Միության կողմից Գերմանիային վաճառել 180 միլիոն մարկի ապրանք։ 1939 թվի սեպտեմբերի 28-ին բարեկամության և սահմանների մասին խորհրդային-գերմանական պակտ կնքելու ժամանակ խորհրդային կառավարության ղեկավար ընկ. Մոլոտովի և Գերմանիայի արտաքին գործերի մինիստր Ֆոն Ռիբբենտրոպի փոխանակած նամակների մեջ փոխադարձ ցանկություն հայտնվեց մշակելու ԽՍՀՄ-ի և Գերմանիայի միջև ապրանքափոխանակություն կատարելու տնտեսական ծրագիրը։ Այժմ այդպիսի ծրագիր մշակված է։

Խորհրդային-գերմանական տնտեսական համաձայնությունը շահավետ է այն ստորագրած երկու երկրների համար։ ԽՍՀՄ-ն ստալինյան երկու հնգամյակների կատարման հետևանքով դարձավ ինդուստրիալ հզոր տերություն։ Կուսակցության XVIII

համագումարը մեր երկրին առաջադրեց վճռական մի խնդիր — տնտեսական տեսակետից հասնել և անցնել կապիտալիստական գլխավոր երկրներից: Այդ խնդրի իրագործման համար, երրորդ հնգամյակի պլանը կատարելու համար Խորհրդային Միությունը պետք է ե՛լ ավելի ընդարձակի իր արդյունաբերության և գյուղատնտեսության տեխնիկական բազան: Այդ ընդարձակումն ապահովվում է խորհրդային մեքենաշինության հսկայական աճումով, բայց ԽՍՀՄ-ն շարունակում է դեռևս շահագրգռված լինել արտասահմանից բարձրորակ արդյունաբերական սարքավորման մի քանի տեսակները ներմուծելու խնդրով: Այդ սարքավորման մի մասը կարող է մեզ մատակարարել Գերմանիան, վորը բարձր զարգացման հասած արդյունաբերական երկիր է հանդիսանում: Միաժամանակ ԽՍՀՄ-ն հումքի խոշորագույն արտադրողն է ամբողջ աշխարհում, հումք, վորին կարիք է զգում Գերմանիայի ինդուստրիան, մանավանդ այժմ, պատերազմի պայմաններում:

ԽՍՀՄ-ի և Գերմանիայի միջև առևտրական հարաբերությունների ծավալը մինչ



էլ խիստ նշանակալի չէ եղել: Այսպես, 1932 թվին եքսպորտը ԽՍՀՄ-ից Գերմանիա կազմել է 446,2 միլիոն ռուբլի, իմպորտը Գերմանիայից ԽՍՀՄ՝ 1435,3 միլիոն ռուբլի: 1932 թվից հետո առևտրական օպերացիաները երկու երկրների միջև կրճատվեցին: 1940 թվի փետրվարի 11-ի համաձայնությունը ապրանքափոխանակությունը ԽՍՀՄ-ի և Գերմանիայի միջև կհասցնի նոր բարձրության:

Խորհրդային-գերմանական տնտեսական համաձայնությունը կնպաստի երկու երկրների տնտեսական և քաղաքական բարեկամական հարաբերությունների հետագա զարգացմանը: Այդ զարգացումը, վորը համապատասխանում է Խորհրդային Միության և Գերմանիայի ժողովուրդների շահերին, չի կարող բարենպաստ ազդեցություն չգործել վողջ միջազգային իրադրության վրա:

Պատ. խմբագիր՝ Դ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Պատ. քարտուղար՝ Հ. ՍԱՐԳՍՅԱՆ



Սրբագրիչ՝ ՀԱՐ. ՓԱՐԻԿՅԱՆ

Գլավլիտի լիազոր Ջ—1114

Պատվեր՝ 404, տիրաժ 8870

Հանձնված է արտադրության 7/V 1940 թ.

Ստորագրված է տպագրության 16/V 1940 թ.

---

Հայկական ԽՍՀ Ժողկոմխորհին կից «Խ. Հ.»
Հրատարակչության տպարան, Երևան